տել տուած է թէ զինակցութեանց դրութիւնը հակառակ է յետ. պատերազմեան ոգիին, եւ թէ առաջարկուած զինակցութիւնը կրնար ուղղուած ըլլալ միայն Իտալիոյ դէմ, որուն հետ դեռ նոր դաշնագիր մը կնքեց Յունաստան։

Իբրեւ հակառաջարկ, Վէնիզէլոս թելադրած է Եուկոսլաւիոյ, կնքել իրաւարարութեան դաշինք մը, տասը տարի պայմանաժամով։

## Փուանքարէի նոր ճառը

Վարչապետ Փուանքարէ Խորհրդարանի բացումէն առաջ ուզելով իր քաղաքական ծրագիրը պարզել երկրին, առիթէն օգտուեցաւ եւ կիրակի օր Շանպէրէի մէջ 20,000 Սավուացիներու յիշատակին կանգնուած կոթողի բացման առթիւ երկար ճառ մը խօսեցաւ։ Մեծ Պատերազմին Սավուացիներու ցոյց տուած քաջագործութիւնները պանծացնելէ եւ քանի մը խօսքեր ընելէ յետոյ իր եղբօր՝ Լիւսիէն Փուանքարէի մասին, որ Շանպէրիի համալսարանին տնօրէն եղած էր, վարչապետը ըսաւ.

— Վերսայլի դաշնագիրը մեզի տուաւ մեր ակնկալած օրինաւոր գոհացումները եւ ո՛չ ոքէ կը պահանջենք աւելի քան ա՛յն, որ այդ դաշնագիրը խոստացած է մեզի.— ապահովութիւն եւ դարմանում։ Տասը տարիէ ի վեր այս երկու յանձնառութիւններէն դուրս բան չփնտռեցինք։ Երբ Տօըսի ծրագիրը կազմուեցաւ, Ֆրանսա անմիջապէս ընդունեց զայն։ Ժընեւի եւ Լոքառնոյի մէջ ընդունեցինք զինաթափութիւնը։ Ֆրանսա ընդհ. խաղաղութիւն կ'ուզէ, կը դատապարտէ յարձակողական պատերազմները եւ կը պահանջէ որ անվնաս ժողովուրդները տեւական ապահովութիւն ունենան։ Կը մաղթենք որ բոլոր ժողովուրդներն ալ մեզի չափ անկեղծ ու խանդավառ կամքն ունենան խաղաղութեան։ Ո՛չ ոք մեզի չափ տառապեցաւ, ո՛չ մէկուն քաղաքներն ու գիւղերը աւրշտկուեցան մերիններուն չափ, ո՛չ ոք այնքան մեռել տուաւ։

Ո՛չ միայն Ուաշինկթընի եւ Ժընեւի, այլ Փարիզի մէջ մեր բանակն ու զինուորական ծառայութեան շրջանը կրճատելով, ամէնէն առաջ զինաթափութեան օրինակը տուինք ուրիշներուն։ Սակայն մեր պաշտպանողական միջոցները գնահատած ատեն, մենք ստիպուած ենք նկատի առնել ուրիշներու զինուորական ուժը, անոնց զինուորական պատրաստութեան ընկերութիւնները, ժողովուրդին քանակը եւ ճարտարարուեստին դիւրին փոփոխելիութիւնը։

Նոյնպէս, եթէ կ'ուզուի վերագնահատել դարմանումներու խնդիրը, ստիպուած ենք յիշեցնել թէ արդար ըլլալու համար պէտք է ընել այնպիսի կարգադրութիւն մը, որ մեր պարտատէրերուն ամբողջական պահանջը վճարելէ յետոյ, մեր պատերազմական վնասներուն համար որոշ հատուցում մը ըլլայ։ Բայց ինչ որ ալ ըլլայ, պէտք է խոհեմ շարժինք եւ մեր գրաւներէն թեթեւօրէն չհրաժարինք։ Բանակցութեան մտնելու չյօժարեցանք՝ զանոնք երկարելու եւ վիժեցնելու յետին միտքով։ Ընդհակառակն, կարելի եղածին չափ շուտ կ'ուզենք վերջնական արդիւնքի մը յանգիլ։

## Ձերբակալութիւններ Մոսկուայի մէջ

Մոսկուայէն կը հեռագրեն.— *Պաշտօնաթերթ Պրաւդա կը հաղորդէ որ ձերբակալուած են բազմաթիւ շահադէտներ։ Ձերբակալուած անձերու բնակարանին մէջ կատարուած խուզարկութիւնները երեւան հանեցին զանազան ապրանքներու կարեւոր մթերքներ, մանաւանդ ուտելիքի վերաբերեալ նիւթեր։*

*Վերջին երկու ամսուան ընթացքին, չորս միլիոն ֆրանքէ աւելի արժէքով ապրանքներ գրաւուեցան։ Վեց հազար մարդ կը հետապնդուի։ Ամբաստանեալներէն շատեր տակաւին չափահաս չեն։*

## Մաքտոնըլտ Պոլտուինի դէմ

*Երէկ Պիրմինկըմի մէջ բացուեցաւ Անգլիոյ Աշխատաւորական կուսակցութեան տարեկան համագումարը։ Կիրակի օր նախապատրաստական հաւաքոյթի մը մէջ Ռամսէյ Մաքտոնըլտ յայտարարեց թէ աշխատաւորականները իրաւամբ կրնան սպասել որ յառաջիկայ խորհրդարանային ընտրութեանց մէջ մեծամասնութիւնը պիտի շահին պահպանողական եւ ազատական կուսակցութեանց վրայ։*

*— Մեր քաղաքական հակառակորդները, ըսաւ Մաքտոնըլտ, կ'ամբաստանեն մեզ թէ մեր դատի յաղթանակին համար կ'ուզենք յեղափոխական միջոցներու դիմել։ Բացարձակապէս սխալ է։*

*«Մենք աստիճանական բարեշրջումով կ'ընթանանք և ահա՛ թէ ինչու վստահ ենք թէ մեր արդար պահանջները պիտի յաղթանակեն։ Աշխատաւորական կուսակցութիւնը միակն է որ ճշմարտապէս գաղափարապաշտ է։ Ասպարէզ կը կարդանք պահպանողականներուն եթէ կարենան ապացուցանել իրենց գաղափարապաշտութիւնը։ Անոնց քաղաքականութիւնը կը ձգտի պարզապէս սինլքորներու համախմբում մը դարձնել Նոր սերունդը՝ ժամանակէն առաջ։*

*Մաքտոնըլտ յետոյ քննադատեց Պոլտուինի միջազգային քաղաքականութիւնը։ Մասնաւորաբար հակառակ խօսեցաւ անգլեւֆրանս. նաւային համաձայնութեան եւ Ժընեւի մէջ զինաթափութեան խնդրին առթիւ անգլիական պատուիրակին բռնած դիրքին։*

## Ողողումներ գաւառներու մէջ

*Վերջին օրերու տեղատարափ անձրեւներուն հետեւանքով, ողողումներ պատահեցան գաւառներու մէջ։ Կացութիւնը գէշ է մասնաւորաբար Կրընոպլի շրջանին մէջ։ Ռոմանշի թումբը պայթեցաւ Պուրկ-տ'Ուազանի շրջանին մէջ, որ արդէն ողողուած էր անձրեւներու առաջ բերած հեղեղներէն։ Երեսուն հեկտար հողի հունձքերը փճացան։ Հեղեղին բերած ցեխերը անբնակելի դարձուցին բազմաթիւ տուներ։*

*Պրիանսոնէն կը հեռագրեն թէ հեղեղը այդ շրջանին մէջ ևս աւերներ գործած է։ Տեղ-տեղ հաղորդակցութիւնները խզուած են։ Տրաք գետը կը շարունակէ բարձրանալ։ Կարգ մը կամուրջներու վրայէն անցքը արգիլուեցաւ։ Սղոցարանի մը փայտերը քշուեցան հեղեղէն։*

*Ատլանտեանի վրայ բուռն փոթորիկ կը տիրէ եւ բազմաթիւ անդրատլանտեան շոգենաւեր չկրցան ժամանակին հասնիլ։ Մանշի վրայ եւս կացութիւնը նոյնն է։ Ատլանտեանի եզերքը կատաղի ալիքները կը քշեն կը տանին ամէն ինչ։ Ձկնորսութիւնը անկարելի դարձած է Տուարնընէզի մէջ։*



## Հ. Յ. Դ.

Մարսէյլի *Պատանեկան Միութեան. հրապարակային դասախօսութիւնը՝ այս Հինգշաբթի երեկոյ ժամը 8ին ընթերցասրահին մէջ։ Դասախօս ընկ. Պ. Հիւսեան։ Նիւթը՝ «Հ. Յ. Դաշնակցութիւնը անելիք չունի այլ եւս» (Յ. Քաջազնունիի գիրքը)։ Սիրով կը հրաւիրուին հայրենակիցները անխտիր։ Մուտքը ազատ է։*

Լիոնի «*Կայծակ*» *խումբի ընդհ. ժողովը՝ վաղը Դշ. երեկոյ, ժամը 8.30ին, գրադարանի սրահը։*

Լիոնի *Պատանեկան Միութեան ընդհ. ժողովը՝ Հինգշաբթի երեկոյ ժամը ճիշտ 8.30ին, գրադարանի սրահը։*

## Ուսուցչուհի կ'ուզուի

*Դպրոցասէր Տիկնանց վարժարանին համար կ'ուզուի դաստիարակ-ուսուցչուհի մը որ միանգամայն թուաբանութեան եւ հայերէնի դասեր աւանդելու կարող ըլլայ փոքր դասարաններուն. անհրաժեշտ է որ ունենայ Ուսումն. Խորհուրդէն վաւերացուած վկայական եւ բարի վարուց յանձնարարական։*




IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)
Le Gérant: E. SOUVIGNY

## «Հայրենակից, թուրքերէն խօսէ»

Թուրք թերթ մը կը գրէ. — Պոլսոյ զանազան վայրերուն մէջ կը հանդիպինք նշանատախտակներու, որոնք «Հայրենակի՛ց, Թուրքերէն խօսէ» վերտառութիւնը կը կրեն։ Մինչդեռ ամէն տեղ Իսրայէլի զաւակները եբրայեցերէն, Հայերն ու Յոյներն ալ կամ իրենց լեզուն, կամ հայերէնի եւ յունարէնի նմանցուած աղճատ ֆրանսերէն մը կը խօսին, այն աստիճան որ ֆրանսերէնը գրեթէ տէր է դարձեր Պոլսոյ...։ Չենք կրնար անտարբեր մնալ Թուրքիոյ մտաւորական կեդրոնին մէջ տեղի ունեցող այս սրտակեղեք դէպքին առթիւ։ Գոնէ այնպէս մը ընենք, որ Թուրքերէնը Պոլսոյ մէջ տիրապետէ այն չափով, որքան արաբերէնը կը տիրապետէ Եգիպտոսի մէջ։ Դժբախտաբար անհետեւանք մնաց ձեռնարկը իրաւագիտական համալսարանի ուսանողներուն, որոնք 7-8 ամիս առաջ գործի լծուեցան։ Արդէն ուրիշ վախճան ալ չէր կրնար ունենալ։

Նկատելով որ դպրոցական տարեշրջանի նախօրեակին կը գտնուինք, կրնանք հետեւեալ լուծումի եղանակը յանձնարարել։ Օտար դպրոցներուն մէջ խորին եւ արդար մոլեռանդութեամբ մը պէտք է ուժ տանք Թուրքերէն լեզուին, Թուրքիոյ պատմութեան, եւ Թուրքերէնի վերաբերեալ ամէն տեսակ դասերու։ Միւս կողմէ սեղմօրէն պէտք է սահմանափակել Թուրքերէնէ տարբեր լեզուները։

## Աշխատաւորականները եւ զինաթափութիւնը

Անգլիոյ Աշխատաւորական կուսակցութեան Պիրմինկըմի համագումարին վերջին օրը բուռն միջադէպ մը տեղի ունեցաւ Մաքտոնըլտի եւ ծայրայեղ տարրերուն միջեւ։ Զինաթափութեան խնդրին մասին կուսակցութեան քաղաքականութիւնը վիճաբանութեան առարկայ կը դառնար եւ Սէնթ-Ալպանսի պատգամաւորները ներկայացուցած էին բանաձեւ մը, առաջարկելով ընդունիլ ամբողջական զինաթափութեան խորհրդային ծրագիրը։

— Ա՛լ ձանձրացայ խորհրդային կառավարութեան հրաշալի առաջարկներէն ամբողջական զինաթափութեան մասին, գոչեց Մաքտոնըլտ։ Անոնք ա՛յնքա՛ն այլանդակ էին, որ նոյնիսկ չկրցան դիմանալ յանձնաժողովի մը քննութեան։ Խորհրդային կառավարութիւնը ետ առաւ այդ առաջարկները եւ անոնց տեղ ներկայացուց ուրիշ ծրագիր մը, որ հեռու է ամբողջական զինաթափութիւն նախատեսելէ։ Մէկ խօսքով, նախ զգայացունց առաջարկներ ըրաւ, յետոյ փութաց լքել զանոնք։

Այս յայտարարութիւնը մեծ աղմուկ հանեց։ Ծայրայեղ տարրերը սկսան պոռչտալ։ Երբ խաղաղութիւնը վերահաստատուեցաւ, Մաքտոնըլտ յայտարարեց, որ անհնարին է ամբողջական զինաթափութիւնը։ Նախ այդ գործը տարիներ պիտի տեւէ, յետոյ կրնան այդ առթիւ խռովութիւններ ծագիլ երկրին մէջ, կառավարութեան փոփոխութիւն առաջ կուգայ եւ դժուարութիւնները կ'աւելնան։

Սէնթ-Ալպանսի բանաձեւին հեղինակն էր Օր. Մէյրի Զըսլի։ Հազարապետ Աման պահանջեց մերժել այս կնոջական առաջարկը։

— Պէտք չէ մոռնալ որ, ըսաւ, հազարաւոր բանուորներ եւ բանուորուհիներ կ'աշխատին Անգլիոյ մէջ ռազմանիւթի եւ զինուորական հագուստեղէնի գործարաններուն մէջ։ Ի՞նչ պիտի ըլլան այն հազարաւոր մանկամարդ կիները, որոնք Պիրմինկըմի մէջ կոճակ կը կարեն մեր զինուորներու համազգեստներուն վրայ։

Ծայրայեղ պատգամաւոր մը ասոր ի պատասխան ըսաւ թէ այդ կիները կրնան մանուկներու կառք շինելու գործին մէջ աշխատիլ։ Ուրիշ պատուիրակ մը դիտել տուաւ թէ ի՛նչ պիտի ըլլան այն ատեն դագաղ շինող ատաղձագործները։

Ի վերջոյ ստուար մեծամասնութեամբ մերժուեցաւ Օր. Զըսլիի բանաձեւը։ Ու համագումարը փակուեցաւ՝ պատգամաւորներու միաձայն երգած «կարմիր դրօշ» երգով։

## Ի՞նչ գնեց Ամանուլլահ

Ամանուլլահ Թագաւորը վերջերս իր մայրաքաղաքին Քապուլի մէջ գումարեց մեծ ժողով մը, որուն մասնակցեցան բոլոր նախարարները, դեսպանները եւ երկրին երեւելիները։ Թագաւորը ժողովին տեղեկութիւններ տուաւ այն գնումներուն մասին, զորս ըրած էր վերջերս Եւրոպա կատարած իր ճամբորդութեան ընթացքին։ Կարեւոր տեղ կը գրաւեն զէնքի եւ ռազմանիւթի ճարտարարուեստին համար ապսպրուած մեքենաները. գնած է նաեւ 53,500 հրացան, 6 գնդացիր՝ իբրեւ նմոյշ, 106 թնդանօթ, 6 հրասայլ, 5 զրահապատ գնացք։

Միւս կողմէ պայմանագրութիւններ կնքուած են գերման եւ ֆրանսական ընկերութիւններուն հետ՝ Աֆղանիստանի մէջ նոր երկաթուղիներ շինելու համար։ Այս աշխատանքները պիտի վերջանան երեք տարիէն։

## ՄԱՆՐ ԼՈՒՐԵՐ

ԶՄՆԵՌՈՒԱՆ ժամը կը սկսի այսօրուընէ։ Երէկ կէս գիշերին ժամացոյցը մէկ ժամ ետ տարուեցաւ։

ՊԱՐՍԿԱՍՏԱՆ եւս մտադիր է ընդունելու Քէլլոկի դաշնագիրը։

ԹՈՒՐՔԻՈՅ մէջ շուտով պիտի բացուի պետական դրամատունը։ Այս առթիւ Պոլսոյ գլխաւոր բոլոր դրամատուններու տնօրէնները Էնկիւրի կանչուած են՝ ծրագրուած դրամատան կազմակերպութեան մասին անհրաժեշտ բացատրութիւնները տալու համար։

ԼԻՆՏՊԷՐԿ Ամերիկայի մէջ պրոպագանդ կը մղէ ի նպաստ Հանրապետականներու թեկնածու Հէրպըրթ Հուվըրի։



## „ՄՇԱԿՈՅԹԻ ՕՐ"Ը ՓԱՐԻԶԻ ՄԷՋ

ՆԱԽԱՁԵՌՆՈՒԹԵԱՄԲ Զ. Ե. Ո. Մ. ԿԵԴՐ. ՎԱՐՉՈՒԹԵԱՆ

Այսօր կիրակի իրիկուն ժամը 8.30ին Salle de Géographieի մէջ, 184 Bld. St. Germain.

Կը նախագահէ՝ Պ. L. ՇԱՆԹ

Կը խօսին՝ Պ. Պ. ՀԱՄԱՍՏԵՂ, Մ. ՆԱԹԱՆԵԱՆ (Զ. Ե. Ո. Մ. կողմէ) Կ. ՍԱՍՈՒՆԻ (Դրօշակ), ՀՐԱՆՏ-ՍԱՄՈՒԷԼ (Յառաջ), ԴԱԻԻԹ ԲԷԿ (Նոր Երկիր), ՏԻԿ. Զ. ԵՍԱՅԵԱՆ (Երեւան), ԵԴ. ՏԱՐՕՆԵԱՆ (Յարդգող)։

Գեղարուեստական բաժնին կը մասնակցին՝ Օր. Հ. ԹՈՐՈՍԵԱՆ (Փարիզի երաժշտանոցէն), Օր. ՂԱԶԱՐՈՍԵԱՆ (Դաշնակ), Պ. ROGER FOSSEY (Ջութակ), Պ. ՆՇԱՆ ՊԷՇԻԿԹԱՇԼԵԱՆ։

Մուտք՝ 2 ֆրանք

## Հ. Յ. Դ.

Փարիզի Քրիստափոր խումբի ժողովը, վաղը Երկուշաբթի իրիկուն ժամը 8.30ին, Café Chope Parisienne, Rue des Ecoles.

Լիոնի Կուկունեանխումբի ժողովը երկուշը. Գրադարանի սրահը ժամը 8.30ին։

Լիոնի «Դժոխք» խումբի դասախօսական ժողովը՝ հոկտ. 9 երեքշաբթի իրիկուն ժամը 8.30ին Հ. Յ. Դաշնակցութեան գրադարան սրահին մէջ։

## ՆԱՄԱԿԱՏՈՒՓ

Մարսէյլ, Շ. Գարահիսարի Անդրանիկ Միութիւն.— Ձեր սգահանդէսին ազդը ստացանք Շաբաթ առտու (Կիրակի օրուան համար)։




IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant: E. SOUVIGNY

— Իտալիա տրամադիր է *ի յառաջագունէ* ընդունիլ ուեւէ Թիւ, նոյնիսկ ամէնէն ցած Թիւը, իբրեւ սահման սպառազինութեանց, պայմանաւ որ եւրոպայի ցամաքային պետութիւններէն ուեւէ մէկը այդ սահմանէն անդին չանցնի:

*Գալով Նաւային զինաթափութեան, Իտալիա համաձայն է որ իւրաքանչիւր պետութեան համար նաւատորմի որոշ տարողութիւն մը նշանակուի եւ ամէն ոք ազատ թողուի իր պահանջներուն համաձայն դասաւորել այդ տարողութիւնը: Իտալիոյ շահը կը պահանջէ այսպիսի կարգադրութիւն մը, քանի որ իր բնական դիրքին բերումով, ազգային պաշտպանութեան մասնաւոր պահանջներ ունի:*

— Իտալիոյ շահը այդ կը պահանջէ, քանի որ ծովային հաղորդակցութեան եւ պարենաւորման երեք ճամբաներ միայն կան, Սուէզ, Ճիպրալթար եւ Տարտանէլ: Յետոյ Իտալիա ունի երկար եզերքներ, որոնց վրայ կամ մօտը բազմամարդ քաղաքներ եւ առաջնակարգ կեդրոններ կան, ունի նաեւ երկու մեծ կղզիներ, առանց հաշուելու երկուտասան կղզիները, որոնք իտալական Թերակղզիին կապուած են կենսական հաղորդակցութեանց գիծերով. վերջապէս Իտալիա դրացի է ուրիշ ազգերու, որոնք Միջերկրականի վրայ ելք ունին կամ կրնան ունենալ, եւ որոնք խիստ նպաստաւոր աշխարհագրական դիրքի մէջ կը գտնուին:

*Իտալական ծանուցագիրը յետոյ յաջորդաբար կը քննէ միւս մասնագիտական կէտերը ու եզրակացնելով կ'ըսէ թէ իտալական կառավարութիւնը Անգլիոյ եւ Ֆրանսայի հետ կնքած ըլլալով Եւրոպայի վերաշինութեան ձգտող զանազան միջազգային դաշնագիրներ, կը փափաքի մասնակցիլ նաեւ զինաթափութեան գործին:*

## Ամերիկացի թղթակիցը կը վտարուի

*Ինչպէս կը յիշուի, «Նիւ Եորք Էմէրիքըն»ի Փարիզի Թղթակիցը քանի մը շաբաթ առաջ իր Թերթին հեռագրած էր պատճէնը գաղտնի շրջաբերականի մը, զոր Ֆրանսայի արտաքին Նախարարութեան ընդհ. քարտուղար Ֆիլիփ Պէրթլօ ղրկած էր բոլոր դեսպաններուն՝ բացատրելու համար անգլեւ-ֆրանսական Նաւային համաձայնութեան մասին կատարուած բանակցութիւնները եւ տալով համաձայնագրին գլխաւոր գիծերը: Ամերիկացի միլիառատէր Ռանտոլֆ Հըրսթի Թերթերը այս հրատարակութիւնը պատրուակ բռնելով յարձակեցան անգլիական եւ ֆրանս. կառավարութեանց դէմ: Ֆրանսայի արտաքին Նախարարութիւնը քննութիւն մը բացաւ՝ յանցաւորը գտնելու համար: Ի վերջոյ, շաբաթ մը առաջ Քէ տ'Օրսէ հրաւիրուեցաւ «Նիւ Եորք Էմէրիքըն»ի Թղթակից Հարոլտ Հորան, որ ազդարարութիւն ստացաւ մինչեւ մէկ շաբաթ մեկնիլ Ֆրանսայէն: Թղթակիցը հեռագրեց Հըրսթի, որ Ուաշինկթըն երթալով Քէլլոկի միջամտութիւնը խնդրեց՝ յայտնելով որ ինք կը ստանձնէ գործին ամբողջ պատասխանատուութիւնը: Փարիզի ամերիկեան դեսպանին դիմումին վրայ, Հորան դարձեալ արտաքին Նախարարութիւն կանչուեցաւ եւ կարծեց թէ խնդիրը պիտի կարգադրուի:*

*Սակայն երկուշաբթի կէսօրին՝ երբ իր ինքնաշարժով բարեկամի մը մօտ կ'երթար, րիւ Տօնուի անկիւնը ոստիկան մը կեցուց կառքը եւ սուլեց. անմիջապէս հինգ հեծանուորդ ոստիկաններ պաշարեցին կառքը: Ուրիշ մեծ ինքնաշարժէ մը գաղտնի ոստիկան մը վար իջաւ եւ Թղթակցին մօտ նստելով հրամայեց որ կառքը քշէ դէպի ոստիկանական տեսչութիւն: Հոն մէկուկէս ժամ սպասելէ յետոյ, պաշտօնեայ մը եկաւ եւ յայտնեց թէ պէտք է 72 ժամէն մեկնի Ֆրանսայէն, ու Թուղթ մը երկնցուց, որպէս զի ստորագրէ: Այլապէս, ըսաւ, Սանթէի բանտը պիտի դրուիք եւ դատարան յանձնուիք: Թղթակիցը ուզեց հեռաձայնել իր փաստաբանին եւ պաշտօնակցի մը, սակայն չարտօնուեցաւ: Ասոր վրայ, Հորան ստիպուեցաւ ստորագրել ներկայացուած Թուղթը, որով յանձնառու կ'ըլլայ մինչեւ հինգշաբթի Ֆրանսայէն մեկնիլ:*

*Ամերիկեան գործակատար Նորման Արմըր խնդրին տեղեկանալով, արտաքին Նախարարութիւն գնաց, ուր ըսուեցաւ իրեն թէ Հորան չէ ձերբակալուած, այլ պարզապէս հարցաքննուած է եւ ինք է որ հաւանութիւն յայտնած է, թէ Ֆրանսայէն պիտի մեկնի հինգշաբթիէն առաջ:*

*Այս վտարումը չի լուսաբաներ խնդրոյ առարկայ վաւերաթուղթին գողութիւնը, քանի որ բուն յանցաւորը Թղթակիցը չէ:*

## Հեղեղներ Կովկասի մէջ

*Մոսկուայէն կը հաղորդեն թէ Պաթումի շրջանին մէջ տեղատարափ անձրեւներու հետեւանքով գետերը յորդած եւ ողողած են աւելի քան 2000 գիւղական տուներ: Երկաթուղագծերը ջուրերու մէջ են: Ողողուած է նաեւ Վրաստանի զինուորական խճուղիին մէկ մասը:*

*** Թէհրանէն 8 Հոկտ. Թուակիր հեռագիր մը կ'ըսէ.

*Կասպից ծովուն մէջ աննախընթաց փոթորիկներ մեծ վնասներ պատճառեցին տուներուն եւ բազմաթիւ նաւամատոյցներու: Բացի ծովեզերեայ քաղաքներու կրած վնասէն, մեծ կորուստներու ենթարկուեցան նաեւ նաւերը:*

## Ստորերկրեայ կոփամարտ

*Երէկ գրեցինք թէ Պերլինի մէջ համայնավար երեսփոխան մը անթելի կայանէն խօսեցաւ ընկերվարական երեսփոխան Շվարցի տեղ: Երկուշաբթի օր «Ֆորվէրց»ի խմբագիր Շիֆ Մէթրոյին մէջ հանդիպեցաւ խնդրոյ առարկայ համայնավար երեսփոխան Շուլցի, որուն քթին բերնին սկսաւ զարնել: Շուլց փոխադարձեց: Ստորերկրեայ այս կոփամարտը շարունակուեցաւ մինչեւ յաջորդ կայարանը, ուր պաշտօնեաներ միջամտեցին եւ վերջ տուին կռիւին: Պաշտօնանկ եղաւ անթելի պաշտօնեան որ թոյլ տուած էր խօսիլ համայնավար երեսփոխանին:*

## ՄԱՆՐ ԼՈՒՐԵՐ

ՀՈՒՆԳԱՐԻԱ եւս որոշեց յարիլ Քէլլոկի դաշնագրին: Պատասխան չէ առնուած դեռ հարաւային Ամերիկայի վեց պետութիւններէն՝ Արժանթին, Պրազիլիա, Չիլի, Քոլոմպիա, Էքուաթոր եւ Փարակուէյ: Քէլլոկ մտահոգ է այս մասին: Յիշեալ պետութիւնները չեն ուզեր յարիլ՝ կռթնած Մընրոյի վարդապետութեան վրայ:

ՍԸՐ ՀԷՆՐԻ ՏՈՊՍի տեղ Միջագետքի անգլիական մարզպան կարգուեցաւ զօրավար Սըր Կիլպըրթ Ֆալքինկըմ Քլէյթըն, որ իր նոր պաշտօնին պիտի ձեռնարկէ յառաջիկայ յունուարին: Սըր Կ. Քլէյթըն մօտէն տեղեակ է արաբական խնդիրներուն եւ վերջերս բանակցած էր Հիճազի ներկայացուցիչներուն հետ:



IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)
Le Gérant: E. SOUVIGNY

բիշ Ֆրանս. օրագրողի մը, Ռոժէ Տըլըփլանքի, որ արտաքին Նախարարութեան մէջ ազատ մուտք ունէր եւ իր բարեկամն էր:

Ահա՛ այս Ֆրանսացին է որ յաջողած է ձեռք բերել երկու կարեւոր վաւերաթուղթերը, գանոնք առնելով արտաքին Նախարարութեան մամուլի դիւանին երիտասարդ մէկ պաշտօնեայէն՝ Ա. կարգի հիւպատոս տը Նոպլէէն: Միայն չի գիտցուիր թէ տը Նոպլէ միամտօրէ՞ն յանձնած է թուղթը թէ՝ արարքին ծանրութիւնը գիտնալով:

Արտաքին Նախարար Պրիան Քոշըրէլ կը գտնուի դեռ եւ ամէն օր մանրամասնութիւններ կը ստանայ քննութեան արդիւնքին մասին: Նախարարը երեքշաբթիի Նախարարական խորհուրդին մէջ զեկոյց պիտի տայ խնդրին մասին:

## Ցեփլինը կը շարունակէ ճամբան

Վերջին լուրերուն համաձայն, «կոմս Ցէփլին» հանդարտօրէն կը շարունակէ ճամբան դէպի Ամերիկա: Ասորեան կղզիներուն վրայէն անցնելէ յետոյ, այժմ կ՚ուղղուի դէպի Պէրմուտեան կղզիները:

Անթելով շարունակ տեղեկութիւններ կ՚առնուին ճամբորդութեան ընթացքին եւ ճամբորդներու վիճակին մասին:

Օդին վիճակը բարուոքած է ովկիանոսին վրայ եւ Ցէփլինը այժմ աւելի արագ կ՚ընթանայ: Ճամբորդներէն տոքթ. Ռէյնըր՝ Նիւճըրսի, իր ընտանիքին ուղղած հեռագրով մը կը յայտնէ թէ ճամբորդներէն շատեր ծովախտի բռնուած են:

«կոմս Ցէփլին»ի հրամանատարը տոքթ. Էքէնըր շատ լաւատես է եւ կը յուսայ Նիւ Եորք հասնիլ այսօր կիրակի՝ կէսօրին, եթէ օդը չաւրուի: Ամբողջ ճամբորդութիւնը 100 ժամէն պակաս պիտի տեւէ: Մինչ օդանաւը 120 ժամուան բաւելիք վառելանիւթ ունի:

*** «կոմս Ցէփլին» յառաջիկայ տարի արշաւանք մը պիտի կատարէ դէպի հիւսիսային բեւեռ՝ ղեկավարութեամբ տոքթ. Ֆրիտեոֆ Նանսէնի, որուն պիտի ընկերանան 50 հոգի, որոնց 11ը ամենագգի գիտնականներ: Ընդհ. ծախք պիտի ըլլայ վեց միլիոն մարք:

## Սուզանաւ մը 43 նաւազով ընկղմած

Տեղական թերթերը քանի մը օրէ ի վեր մտահոգութիւն կը յայտնէին «Օնտին» սուզանաւին (ընդծովեայ) մասին, որ հոկտեմբեր 1ին Շէրպուրկէն ճամբայ ելած էր դէպի Պիզէրթ (Թունուզ) եւ որ հոն պիտի հասնէր ամսոյն 9-10ին: Սուզանաւը սկիզբի երեք օրերուն շարունակ անթելով տեղեկութիւններ կուտար իր ճամբորդութեան մասին: Իսկ հոկտեմբեր 4էն սկսեալ ոեւէ լուր չառնուեցաւ: կ՚ենթադրուէր թէ փոթորիկին պատճառով անթելը աւրուած էր: Սակայն շաբաթ մը առաջ արդէն Ճիպրալթար պէտք է հասած ըլլար, մինչ նեղուցին կամ նաւահանգիստին մէջ «Օնտին»ի հետքը չէր տեսնուած:

Ամսթէրտամի ֆրանսական հիւպատոսէն հասած հեռագիր մը լուսաբանեց առեղծուածը: Հոլանտական այդ նաւահանգիստը հասած «Եկատերինա Կուլանդրիս» անուն յունական շոգենաւի մը նաւապետը կը պատմէ թէ հոկտ. 3էն 4 լուսնալիք գիշերը ժամը 11ին, երբ կ՚անցնէր Սպանիոյ եզերքին մօտ Վիկօի Ծոցէն, բախում մը ունեցաւ սուզանաւի մը հետ: Մութին պատճառով չկրցաւ զանազանել թէ ի՛նչ ազգի կը պատկանէր սուզանաւը, որ անմիջապէս ընկղմեցաւ եւ հակառակ իր երկու ժամուան աշխատանքներուն, չկրցաւ ոեւէ օգնութիւն ընել:

Սուզանաւին հրամանատարն էր Ժան Պրէթմայէր, 34 տարեկան, որմէ զատ կային ուրիշ երկու սպաներ, 10 ենթասպաներ եւ 30 նաւազ, ընդամէնը 43 հոգի:

«Էտկար-Քինէ» դպրոց-նաւը Պրէսթէն ճամբայ ելաւ դէպի աղէտին վայրը, Վիկոյի հարաւը, գինուորական պատիւներ ընելու համար «Օնտին»ի զոհերուն:

## Թուրքեւպուլկար դաշինքը

Սոֆիայէն կը հեռագրեն թէ կառավարութիւնը պատրաստած է Թուրքեւպուլկար իրաւարարութեան եւ հաշտութեան դաշինքին նախագիծը, որ շուտով պիտի ղրկուի Էնկիւրիի պուլկար դեսպանին: Այս վերջինը բանակցութիւններու պիտի սկսի Թուրք կառավարութեան հետ: Մամուլը այս առթիւ յոյս կը յայտնէ թէ բանակցութիւնները շուտով պիտի յանգին, քանի որ երկու կողմերն ալ նոյն խաղաղասիրական զգացումով եւ խաղաղութիւնը ամրապնդելու բուռն փափաքով տոգորուած են:

## Ռումբեր կը պայթին Չեկայի շէնքին մէջ

Մոսկուայէն կը հեռագրեն.— Կէփէուի շէնքին մէջ մեծ յուզում կը տիրէ հետեւեալ դէպքին պատճառով: Կէփէուի շէնքին դռնապանը մաքրութիւն կատարած պահուն, մուտքի դրան վրայէն երկու ռումբեր գետին ինկան եւ պայթեցան սալայատակին վրայ: Դռնապանին խցիկը ամբողջովին քանդուեցաւ և դռնապանը ինքն ալ վիրաւորուեցաւ ծանրապէս:

Հակառակ կատարուած խուզարկութեանց եւ հսկողութեանց, Կէփէուի մարդիկը չկրցան գտնել ռումբերը դրան վրայ դնողները: Երեք ամսուան մէջ այս երկրորդ անգամն է որ «հակայեղափոխական» կազմակերպութիւն մը յարձակում կը գործէ համայնավար գաղտնի ոստիկանութեան կեդրոնին վրայ:



IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS

208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant: E. SOUVIGNY

կայացուցած եւ պահանջած էր այս գիծին ստիպողաբար շինուիլը, այժմ կը յայտարարէ թէ դրամ կարելի պիտի ըլլայ գտնել, անգլիական կառավարութեան երաշխաւորութեամբ։

Իրաքի եւ Լոնտոնի կառավարութեանց միջեւ համաձայնութիւն գոյացած է 2,100,000 անգլիական ոսկիի փոխառութիւն մը կնքելու համար Լոնտոնի հրապարակին վրայ, 100ին 5 տոկոսով եւ անգլիական ու Իրաքի կառավարութեանց երաշխաւորութեամբ։

Բացի երկաթուղիէն, կամուրջ մը պիտի շինուի Տիգրիսի վրայ եւ ուրիշ կարեւոր շինութիւններ ալ պիտի ըլլան։ Մեծ ջանքեր կ'ըլլան նաեւ Հալէպ-Նիսիպին գիծը մինչեւ Մուսուլ երկարաձգելու համար, ինչպէս նախատեսուած էր պատերազմէն առաջ Պաղտատի երկաթուղիի ծրագրին մէջ։ Այս ձեւով կարելի պիտի ըլլայ երկաթուղիով Սուրիա փոխադրել Քիւրտիստանի մեծաքանակ բուրդն ու ցորենը, որոնք ներկայիս ուղտերով եւ ինքնաշարժերով Իրաք կը փոխադրուին։ Փոխառութիւնը շատ մօտ ատենի մէջ հրապարակ պիտի հանուի։

⁂ Ներկայիս երկու երկաթուղագծեր կան Պաղտատէն դէպի Մուսուլ։ Մէկը պատերազմէն առաջ Գերմաններուն շինածը՝ մինչեւ Սամարա (74 մղոն), զոր Անգլիացիները զինուորական նպատակներով երկարեցին մինչեւ Շէրկաթ (112 մղոն եւս). երկրորդ՝ մէկ մեդր լայնքով գիծը՝ դէպի Քէրքուք։ Մուսուլ կը գտնուի Շէրկաթէն մօտ 70 մղոն հիւսիս, անցնելով անապատային շրջանէ մը։ Քէրքուքէն Մուսուլ մօտ 100 մղոն է եւ ճամբան կ'անցնի Իրաքի ամենէն արգասաբեր ու ցորենաշատ շրջանէն, Տիալայի հովիտէն։

Զօր. Հէմմրնտ իր տեղեկագրին մէջ կը յանձնարարէ Պաղտատ-Մուսուլ գիծը երկարել այս կողմէն։ Սամարա-Շէրկաթ գիծին երկաթները քակել եւ նոր շինութեան համար գործածել. իսկ Պաղտատէն Սամարա նեղ գիծով երկաթուղին պահել։

## Կացութիւնը Պուլկարիոյ մէջ

Փարիզի Պուլկար Մամուլի Դիւանը զեկոյցով մը կը հերքէ այն լուրերը թէ Մակեդոնացիներու անմիաբանութեան պատճառով, խռովութիւններ ծագած են Պուլկարիոյ մէջ։ «Այս լուրերը, կ'ըսէ, դիտումնաւոր են։ Բացի Սոֆիայի ցաւալի միջադէպէն, որուն կարեւորութիւնը դիտմամբ չափազանցուած է արտասահմանի շահագրգռուող շրջանակներուն կողմէ, չէ պատահած ոեւէ դէպք, որ խռովէր երկրին, մանաւանդ Փէթրիչի նահանգին ապահովութիւնը։

«Այդ նահանգին վարչական եւ զինուորական իշխանութիւնները խիստ միջոցներ ձեռք առած են՝ արգիլելու համար, որ կարգը խանգարուի։ Պիտի արգիլուին նաեւ սահմանին միւս կողմէն գաղթական հրոսախումբերու արշաւանքները, որոնք կը ձգտին փափուկ կացութիւն մը ստեղծել՝ յարձակելով սահմանակից շրջանի բնակչութեան վրայ։

## Բեւեռի աղէտին շուրջ

Նորվեկեան ձկնորսանաւ մը ծովուն մէջ գտաւ Կիլպոյի ջրօդանաւին՝ «Լաթամ»ի պէնզինի ընդունարանը, որուն մէջ դեռ 30 լիդր պէնզին կար։ Ընդունարանին վրայ կային կարգ մը արձանագրութիւններ՝ կաւիճով գրուած։ Նախապէս կը կարծուէր թէ ատոնք աղէտի պահուն Կիլպոյի, Ամունտսէնի եւ ընկերներուն կողմէ գրուած նօթեր են, սակայն քննութիւնը ցոյց տուաւ թէ այդ գիրերը նախապէս կային արդէն։

Կը կարծուի թէ այս գիւտին շնորհիւ կարելի պիտի ըլլայ ճշդել ջրօդանաւի ընկղմած վայրը։

## Համայնավարներու դատապարտութիւն

Ռումանիոյ մէջ երեւան հանուած էր համայնավար գաղտնի կազմակերպութիւն մը։ Քլուժի զինուորական խորհուրդը վերջացուց ամբաստանեալներու դատավարութիւնը։ 33 ամբաստանեալներ եւ օրագրող Վիքթոր Արատի անպարտ արձակուեցան, 23 հոգի 15 օրէն 8 տարի բանտարկութեան դատապարտուեցան։ 13 հոգի ի բացակայութեան դատապարտուեցան։

Դատավարութիւնը երեւան հանեց թէ համայնավարները խռովարարական ձեռնարկներ պիտի կատարէին պետութեան դէմ եւ թէ արտասահմանէն գումարներ կը ստանային՝ Ռումանիոյ բանուորական միութեանց մէջ քարոզչութիւններ ընելու համար։

## ՄԱՆՐ ԼՈՒՐԵՐ

ԻՏԱԼԱՑԻ 15 տարեկան կին մը՝ Էմմա Ֆէրրէրօ, որ կը բնակի Ֆրանսայի Վար նահանգի Քօլոպրիէր գիւղին մէջ, մէկ օրուան մէջ երեք աղջիկ ծնաւ, երեքն ալ քաջառողջ վիճակի մէջ։

ՏԻԼԼԱ ՄԱՃՃԻՈՐԱ, իտալացի համայնավարը, որ երկու ֆաշիստ սպաննած ըլլալուն համար մահուան դատապարտուած էր, առջի օր գնդակահար եղաւ Փոնթէ Պուճճիանեզէի մէջ։



## „ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐ"Ը

ԱՆԻԷՌ-ՊՈՒԱ ՔՈԼՈՆՊԻ ՄԷՋ

վաղը կիրակի կէսօրէ վերջ ժամը 2ին պուա-քօլոնպի Թաղապետութեան թատերական սրահին մէջ։

կը խօսին՝ Ընկ. Ա. ԽԱՏԻՍԵԱՆ և ՀԱՅ ԳՆԴՈՒՆԻ

բանախօսութիւն, երգ, արտասանութիւն եւ ներկայացում։

ԿԱՐՏԱՆ

վաղը կիրակի կէսօրէ վերջ ժամը 2ին, Հ. Յ. Դաշնակցութեան Տան մէջ։

ԼԻՈՆԻ ՄԷՋ

վաղը կիրակի իրիկուն ժամը 8.30ին։ կը խօսի՝ Ընկ. ՋԱՄԱԼԵԱՆ։ Մանրամասնութիւնները տեղին վրայ։

## «ՄՇԱԿՈՅԹԻ ՕՐ»Ը ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ՝ Զ. Ե. Ռ. Մ. ՄԱՐՍԷՅԼԻ ՄԱՍՆԱՃԻՒՂԻՆ
վաղը կիր. կէսօրէ վերջ ժամը 2.30ին 84 րիւ Ռափ, Պօն Թէաթրի մէջ

## ՀԱՃԸՆԻ ԳՈՅԱՄԱՐՏԻ ՑՐԴ ՏԱՐԵԼԻՑԸ

վաղը կիր. ժամը 2ին 46 րիւ Թափի վեր, Սալոն Սպանեոլի մէջ։

## Հ. Յ. Դ.

Իսի-լէ-Մուլինոյի «Վռամեան» ենթակոմիտէի ընկերահամակրական դասախօսական ժողովը՝ վաղը կիրակի կէս օրէ վերջ ժամը 3ին Av. de Verdun 144 սրճարանի սրահը։ Կը հրաւիրուին Իսի-լէ-Մուլինոյի, Պիյանքուրի, Սէն-Ժէրմէն կղզիի, Մէօտոնի եւ Քլամարի բոլոր ընկերներն ու համակիրները։ Կը խօսի՝ ընկ. Կ. ՍԱՍՈՒՆԻ։

Լիոնի Շրջ. Կոմիտէն ստիպողաբար ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները վաղը կիրակի առաւօտ ժամը 8.30ին Հ. Յ. Դ. Գրադարանը։ Ներկայ պիտի ըլլայ Ընկ. Ջամալեան։

Ներկայանալ անդամատետրով։ Շրջաններէ եկող բոլոր նոր ընկերները կը հրաւիրուին արձանագրութիւնները կատարելու համար։

Վիէնի Շրջ. Կոմիտէն ընդհ. անդամական ժողովի կը հրաւիրէ ընկերները վաղը կիր. առաւօտ ժամը 9.30ին Հայ ժողովրդ. լսարանը։ Կարեւոր հարցեր։

Ալֆորվիլի «Սարգիս Մինասեան» ենթակոմիտէն կը հրաւիրէ ընկերները եւ փափաքող հայրենակիցները մասնակցիլ սուգի այցելութեան որ կը կատարուի վաղը կիրակի կէս օրէ վերջ, ժամը 3ին, տեղին գերեզմանատան մէջ, ընկեր ՅՈՎՀԱՆՆԷՍ ԵԱՂՃԵԱՆԻ շիրմին վրայ, անոր մահուան տարելիցին առթիւ։

## ՑՈՒՇԱՏԵՏՐ

ԼԻՈՆԻ Ե. Կ. Խաչի մասնաճիւղին ընդհ. ժողովը՝ վաղը կիրակի ժամը 2ին, Գ. Մէոիի գրադարանը։ Օրակարգ՝ պատգամաւորի զեկուցում։

ԼԻՈՆԻ Տարօն Տուրուբերանի Հայր. Միութեան վարչութիւնը ժողովի կը հրաւիրէ Լիոնի եւ Տէսինի բոլոր հայրենակիցները վաղը կիրակի կէսօրէն վերջ ժամը 1ին Տարօն Սրճարան։ Կարեւոր օրակարգ։

## ՆԱՄԱԿԱՏՈՒՓ

ՍՏԱՑԱՆՔ

Վիէն, Կ. Վ.— 70 ֆրանք։
Սէն Ռանպար, Ն. Մ.— 43։
Սէն Ռանպար, Յ. Զ.— 43։
Ֆոնթընէ Սու-Պուա, Ա. Գ.—35։
Թաւրիզ. Գործ.— Ստացանք։
Պէլֆոռ, Լ. Տ. Մ.— 35։
Լիոն, Գործ.— 937.50։
Լիոն, Ս. Ճ.— 110։




IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)
Le Gérant: E. SOUVIGNY

կողմէ ուտելիքի կայաններ պիտի բացուին դպրոցներուն մէջ: Ասկէ զատ հանգանակութիւններ պիտի կատարուին օգնութեան հասնելու համար սովահար բնակչութեան:

⁂ Առժամաբար ազատ արձակուեցան խորհրդարանական մեծամասնութեան երեսփոխանները, որոնք ձերբակալուած էին քարիւղի խնդրին առթիւ: Այս ձեւով կառավարութիւնը պիտի խուսափի հարցապնդումէ:

## Կարմիր բանակը ամենէն զօրաւոր

Գերման թերթերը կը գրեն թէ ներկայիս ռուսական բանակը աշխարհի ամէնէն զօրաւորն է, որովհետեւ հոկտեմբեր 1էն սկսեալ Խորհրդային Միութեան մէջ սկսուած է գործադրուիլ պարտադիր զինուորական ծառայութեան օրէնքը: Ծառայութիւնը պիտի տեւէ երկու տարի, ինչ որ կը նշանակէ թէ ամէն տարի 1,200,000 նոր զինուոր պիտի մտնէ կարմիր բանակին մէջ: Ասոնցմէ 400,000ը պիտի մտնեն կանոնաւոր զինուորներու շարքերուն, իսկ 800,000ը երկրապահ ջոկատներու մէջ:

## Կերենսկի-Եուսուփով դատը

Ռուս Յեղափոխական-Ընկերվարականներու պաշտօնաթերթ «Դնի»ի մէջ անուանարկիչ յօդուած մը հրատարակուած էր իշխան Եուսուփովի դէմ (Ռասպուտինի սպանիչ): Իշխանը դատ բացաւ թերթի տնօրէն-խմբագիր Կերէնսկիի եւ պատասխանատու տնօրէնին դէմ: Իշխան Եուսուփովի փաստաբանն էր Մօրօ տը Ճաֆերի: Դատարանը լսելէ յետոյ երկու կողմի փաստաբանները, «Դնի»ի պատասխանատու տնօրէն Պլումֆելտը դատապարտեց 16 ֆրանք տուգանքի եւ մէկ ֆրանք հատուցումի:

Ասկէ զատ դատավճիռը «Դնի»ի ծախքով պիտի հրատարակուի տասը թերթերու մէջ, զորս պիտի նշանակէ իշխան Եուսուփով:

## Նոր վէճեր համայնավարներու միջեւ

Մոսկուայի պաշտօնաթերթ «Պրաւդա» կը հրատարակէ կեդր. վերստուգիչ Յանձնաժողովի մէկ կոչը, որով հրաւէր կ'ըլլայ համայնավար կուսակցութեան անդամներուն շիտակ ճամբու մէջ մտնել: Ասկէ կը հասկցուի թէ բոլշեւիկեան շարքերուն, մանաւանդ Մոսկուայի շրջանին մէջ նոր ձգտումներ սկսած են ծայր տալ:

Կոչը կը թելադրէ համայնավարներուն, որ երկու ճակատի վրայ պայքար պէտք է մղել ընկերվարութեան եւ թշնամի երկու խմբակցութեանց դէմ: Առաջին խմբակցութիւնը Տրոցկիի վերջին հետեւորդներն են, որոնք կը պայքարին ընչազուրկ աշխատաւորները աղքատ գիւղացիներուն միացնելու քաղաքականութեան դէմ: Հակառակորդներու երկրորդ խմբակցութիւնը որ «պահպանողական համայնավար»ներէ կը բաղկանայ, կը գտնէ որ պէտք է դադրեցնել կռիւը հարուստ գիւղացիներուն դէմ, որովհետեւ միայն անոնք է որ կ'արտադրեն՝ քաղաքները պարենաւորելու բաւարար չափով:

## Ալիանս-Իսրայէլիթի բողոքը

Վերջերս Երուսաղէմի մէջ Անգլիացիները արգիլած էին Հրեաներուն՝ լալ և ողբալ Սողոմոնի տաճարին պատերուն տակ, ինչպէս սովոր են ընել հին դարերէ ի վեր:

Ալիանս-Իսրայէլիթը, Պաղեստինի անգլիական մարզպանին ուղղուած հեռագրով մը, յանուն աշխարհի բոլոր Հրեաներուն կը բողոքէ եւ կ'ըսէ թէ այդ դէպքը մեծ յուզում առաջ բերած է իրենց կրօնակիցներուն մէջ, մանաւանդ որ արգելքը տեղի ունեցած է Կիպպուրի օրը: «Բովանդակ հրէութիւնը մեծ ցաւ կը զգայ՝ որ Իսրայէլացիներուն թոյլ չէ տրուած ազատօրէն կատարել իրենց կրօնական պարտականութիւնները, մասնաւորապէս հանդիսաւոր օր մը եւ ա'յնքան նուիրական վայրի մը մէջ:»



IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant: E. SOUVIGNY

## „ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐ”Ը

ԱՆԻԷՌ-ՊՈՒԱ ՔՈԼՈՆՊԻ ՄԷՋ

Այսօր կիրակի կէսօրէ վերջ ժամը 2ին պուա-քոլոնպի թաղապետութեան թատերական սրահին մէջ:

Կը խօսին՝ Ընկ. Ա. ԽԱՏԻՍԵԱՆ և ՀԱՅ ԳՆԴՈՒՆԻ

ւոր հիւանդութեանց մանրէներ կը պատրաստէր՝ գիշերային տքնաջան աշխատութեամբ, իսկ ցորեկները կը բանեցնէր առեւտրական ու կալուածական գործերու գրասենեակ մը։

Նկատի առնելով Շիրմէրի յոռի անցեալը, տեղական թերթերը կ'ըսեն թէ յիշեալը զուտ գիտական հետազօտութեան սիրոյն չէ որ կ'աշխատէր, այլ մէկու մը հաշուոյն եւ կարեւոր վարձատրութեան մը փոխարէն։

Հարցաքննիչ դատաւորը այժմ կը փնտռէ այդ մէկը։ «Էնթրանսիժան»ի համաձայն, Շիրմէր կ'աշխատէր ի հաշիւ միջազգային լրտեսի մը, որուն անուան սկզբնատառն է S։

Իր տունէն գրաւուած սրուակներու հաւաքածոն յանձնուած է քիմիագէտ Պայլի՝ եւ Քոհն-Ապրոսթի՝ տարբաղադրելու համար։

Քննութիւնները փութով առաջ կը տարուին։

## Մարսիլիոյ գործադուլը

Մարսիլիոյ նաւահանգիստի աշխատաւորներուն գործադուլը մեղմանալու վրայ է։ Հանրօգուտ շինութեանց նախարար Անտրէ Թարտիէօի ներկայացան նաւատէրերու եւ նաւային աշխատաւորներու արհեստակցական միութեանց պատուիրակները։ Սակայն կարելի չեղաւ համաձայնութեան մը յանգիլ։

Միւս կողմէ շոգենաւային ընկերութիւնները յաջողեցան ճամբայ հանել քանի մը շոգենաւեր՝ դէպի հիւսիսային Ափրիկէ, Քորսիքա եւ Մօտաւոր Արեւելք։ Առիթէն օգտուելով, իտալական շոգենաւային ընկերութիւնները յաջողեցան իրենց շոգենաւերուն վրայ առնել շատ մը ճամբորդներ։

## Դաւ մը Սերպիոյ թագաւորին դէմ ?

Պելկրատէն վիէննական թերթի մը կը հեռագրեն թէ վերջերս սպաննուած Խրիսթովիչի հագուստներուն մէջ կարուած թուղթեր գտնուած են, որոնք կը հաստատեն թէ դաւադրութիւն մը կազմակերպուած էր սպաննելու համար Եուկոսլաւիոյ Ալեքսանդր թագաւորը եւ Ռատիչի կուսակցութեան քանի մը յայտնի անդամները։

## Թուրք դեսպաններու փոփոխութիւն

Հետեւեալ փոփոխութիւնները կատարուած են Թուրք դեսպանատանց մէջ.— Թէվֆիք պէյի տեղ, որ Հանրապետութեան Նախագահի ընդհանուր քարտուղար անուանուեցաւ, Մոսկուայի դեսպան կարգուեցաւ Փեշթայի դեսպան Վասըֆ պէյ. Փեշթայի դեսպան նշանակուեցաւ հանրօգուտ շինութեանց նախկին գործավար Պէհիճ պէյ. Թոքիոյի դեսպան՝ Աթէնքի դեսպան Ճէվատ պէյ, իսկ Աթէնքի դեսպան՝ արտաքին գործավարի խորհրդական Էնիս պէյ։

Սթոքհոլմի գործակատար Հայտար պէյ Պելկրատի, Հռոմի դեսպանատան խորհրդական Վասըֆի պէյ Սթոքհոլմի, Թոքիոյի դեսպանատան խորհրդական Խուլուսի պէյ Նանքինի, Մոսկուայի դեսպանատան խորհրդական Թալէաթ Րէուֆ պէյ Թոքիոյի, Փեշթայի խորհրդական Նուրէտտին պէյ՝ Մոսկուայի, Նիւ Եորքի աւագ հիւպատոս Մունիր Սիւրէյեա պէյ Հարաւային Ամերիկայի գործակատարութեան պաշտօններուն կոչուեցան։

## Վիեննայի զոհերուն յուղարկաւորութիւնը

Վիէննէնի փլած շէնքին տակ մեռնող 19 բանուորներու յուղարկաւորութիւնը կատարուեցաւ անջի առաւօտ։ Համայնավար պաշտօնաթերթ «Ռումանիթէ», առիթէն օգտուելով, երեք օրէ ի վեր «յեղափոխական» գործունէութեան կը հրաւիրէր իր հետեւորդները, զոհերու յուղարկաւորութեան առթիւ։ Ասոր վրայ ոստիկանութիւնը ամէն միջոց ձեռք առաւ ոեւէ ցոյցի տեղի չտալու համար։ Դագաղները դրուած էին չորս մեծ մեռելակառքերու մէջ, որոնք Քէ տը լա Րափէի դիազննարանէն մեկնեցան և Պուլվար Տիտրոյի ճամբով ուղղուեցան դէպի Վէնսէն։ Վէնսէնի դրան առջեւ և Նասիոնի հրապարակը ոստիկանական բազմաթիւ ջոկատներ դիրք բռնած էին՝ փակելով դէպի Վէնսէն անցքը։

Յուղարկաւորութեան ժամուն մէթրոյէն ելլողներն ու հանրակառքէ կամ օթոպիւսէ իջնողները կը հարցաքննուէին ոստիկաններուն կողմէ եւ կասկածելիները կը տարուէին մօտակայ պահականոցը։ Քսան հոգի, որոնց վրայէն գտնուեցան լեցուած ատրճանակ, բիր, ամերիկեան կռուփ եւլն. բանտարկուեցան։

Ֆոնթընէ փողոցին երեք սրճարաններուն մէջ համայնավար կուսակցութիւնը տոմարներ դրած էր, ուր կը ստորագրէին անդամները։ Ոստիկանները կը ձերբակալէին բոլոր ներկայացողները։ Մինչեւ ժամը 1 ձերբակալուեցան 2000 հոգի։

Յուղարկաւորութիւնը կատարուեցաւ խաղաղ։ Պաշտօնական ներկայացուցիչները ճառեր խօսեցան։

## «Կոմս Ցեփլին» կը վերադառնայ

Գերման հսկայ ղեկաւոր օդանաւը, որ Միացեալ Նահանգներու արեւմտեան գաւառներուն վրայ շրջան մը պիտի կատարէր անջի օր, գէշ օդին պատճառաւ յետաձգեց իր ճամբորդութիւնը։ «Կոմս Ցէփլին»ի հրամանատար Տօքթ. Էքէնէր յայտնեց, որ եթէ մինչեւ Ուրբաթ կէսօր, օդը շարունակէ աննպաստ ըլլալ, պիտի հրաժարի Ամերիկայի շրջանէն եւ պիտի պատրաստուի Եւրոպա վերադառնալ։





«ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐ»Ը ՍԷՆ ՇԱՄՈՆԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. տեղական կոմիտէի, վաղըկիրակի կէսօրէ վերջ ժամը 3ին, վարուժան ակումբին մէջ։ Խմբերգ, մեներգ արտասանութիւններ եւ բանախօսութիւն։ Մուտքը ազատ է։

ՀԱՃԸՆԻ ԳՈՅԱՄԱՐՏԻ 8ՐԴ ՏԱՐԵԼԻՑԸ ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

Վաղըկիր. առաւօտ ժ. ը 9ին 46 Րիւթափիվէր Սալօն Սպանեօլի մէջ



## Հ. Յ. Դ.

Պէլվիլի կոմիտէի ժողովը այսօր շաբաթ իրիկուն ժամը 8.30ին 131 Fbg. du Temple. Նիւթ՝ «Թուրքիոյ հարցարանը»։

Մարսէյլի «Իշխան» ենթակոմիտէն ժողովի կը հրաւիրէ իր բոլոր խումբերը այսօր շաբաթ երեկոյ ժամը 8ին սովորական հաւաքատեղին։ Ներկայանալ անդամատետրով։

Լիոնի Պատ. Միութեան դասախօսական ժողովը՝ վաղըկիր. առաւօտ ժամը 8.30ին Գրադարանի սրահը։ Նիւթ՝ «Հայ երիտասարդութեան ուխտը»։ Կը հրաւիրուի Լիոնահայ երկսեռ երիտասարդութիւնը։

## ՑՈՒՇԱՏԵՏՐ

ՓԱՐԻԶԻ Տիգրանակերտի միութեան դասախօսական ժողովը՝ վաղը կիրակի ժամը 2.30-ին 184 Ave. d'Italie, մէթրօ Իթալի։ Կը հրաւիրուին Փարիզի եւ շրջականերու բոլոր հայրենակիցները։

ՓԱՐԻԶԻ «Բարձր Հայք»ի Հայրենակցական միութեան ընդհ. ժողովը՝ վաղը կիրակի կէսօրէ վերջ ժամը 3.30ին, 131 Fbg. du Temple, Ռոստոմի սրահը։ Կարեւոր օրակարգ։

ՓԱՐԻԶԻ Ուրֆայի Հայրենակցութեան ընդհ. ժողովը՝ վաղը կիրակի իրիկուն ժամը 8.30ին «La Petite Source»ի սրահը, մէթրօ Օտէոնի դիմացը։ Բոլոր անդամներու ներկայութիւնը անհրաժեշտ է։

ՄԱՐՍԷՅԼԻ Արեւմտ. Եւրոպայի Հ. Կ. Խաչի մասնաճիւղի Բ. տարեշրջանի առաջին դասախօսական ընդհ. ժողովը՝ վաղըկիրակի կէսօրէ վերջ ժամը 2ին. 63 Rue de la Républiqueի սրահին մէջ։ Կը խօսի՝ Պ. Աբօ Աբօեան։ Նիւթ՝ «Կնոջ դերը հասարակութեան մէջ»։

Պ. Ա. ՆԱԻԱՐԵԱՆԸ կը խնդրուի հանդիպիլ՝ Տօքթ. Մ. Տ. Նորայրի 17 Rue Lamartine.

ՅԱՐԴԳՈՂ

ՁԱՐԵԱՆԻ եւ ՁԱՐԻՖԵԱՆԻ մեկումին առթիւ կազմակերպած է Գինիձօնք մը վաղը Կիրակի իրիկուն ժամը 9.30ին Ֆլորիայի մէջ։ Կը հրաւիրուին անդամներն ու համակիրները։

ՆԱՄԱԿԱՏՈՒՓ

ՍՏԱՑԱՆՔ

Նանթ, Գ. Ս.— 35 ֆր.։
Մարսէյլ, Տիկ. Շ.— 140։
Ցէսին, Հ.— Մինչեւ Նոյ. 5 վճարած էք։

ՆԱՄԱԿ ունին Պ. Պ. Մելքոն Ալէմշերեան, Թորոս Սիմոնեան եւ Պաղտասար Չիթճեան։



IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant: E. SOUVIGNY



ՀՐԱՊԱՐԱԿ ԵԼԱՒ

ՈՂԲԱՑԵԱԼ ԹԷՈԴԻԿԻ

"ԱՄԷՆՈՒՆ ՏԱՐԵՑՈՅՑԸ"

1929Ի ՀԱՏՈՐԸ (ՎԵՐՋԻՆ ՏԱՐԻՆ)

550 էջ մանրատառ։ Բազմաթիւ պատկերներ։ Անփոփոխ... կուռ, գեղեցիկ։ Ամբողջ գիրքը գեղանկարուած։ Դիմել՝ «ՄԱՍԻՍ» տպարան, 208bis, Rue Lafayette, PARIS

ԳԻՆ՝ 50 ՖՐԱՆՔ

Սէնփլոնի ճեպընթացին մահճաբարձ վակոնը, իսկ դիմացէն եկող արագընթացին Ա. կարգի երկու վակոնները, ինչպէս նաեւ գոյքերու եւ թղթատարի վակոնները բոլորովին ջարդ ու փշուր եղան։ Մեռածներու ընդհանուր թիւնէ 31, իսկ վիրաւորներունը՝ 47։ Մեռածներուն մէջ են՝ իտալացի ճարտարագէտ Ռոքքա, կինը եւ աղջիկը։ Ռոքքա զաւակն է զօրավար Ռոքքայի, որ վերջերս մեռաւ ինքնաշարժի արկածի մը հետեւանքով։ Զոհերու կարգէն են Փարիզի ռումանական դեսպանատան կցորդը՝ գնդապետ Թաթարանու, յոյն քաղաքացի Զախարոֆիատէս, Պուքրէշի Ֆորտի գործարաններուն տնօրէնը, Շիքակոյի վաճառական մը եւ 25 Ռումանացիներ, որոնք արագընթացի Գ. կարգով կը ճամբորդէին։

Վիրաւորներէն 25 հոգի փոխադրուեցան Սլաթինայի հիւանդանոցը։

*** Սէնփլոնի ճեպընթացը կը բանի պալքանեան մայրաքաղաքներու եւ Փարիզի միջեւ։ Թուրքիայէն, Յունաստանէն, Եուկոսլաւիայէն, Իտալիայէն եւ Զուիցերիայէն անցնելով Ֆրանսա կը մտնէ՝ Վալլորպի ճամբով։ Սէնփլոնի ճեպընթացին գլխաւոր մասը Ռումանիայէն չանցնիր։ Սերպիական Վինքովչի կայարանին մէջ Պուքրէշ-Փարիզ մահճաբարձ վակոնը կը կցուի Աթէնքէն եւ Պոլիսէն եկող կառախումբին։ Այդ է պատճառը որ օտար զոհերու թիւը քիչ է։ Կառախումբին մէջ կը գտնուէին «Էքօ տը Փարի»ի թղթակիցը Լաքոսթ եւ եպիսկոպոս Թրիկէն, որոնք ազատուեցան։

## Սով եւ թշուառութիւն Ռուսիոյ մէջ

Մոսկուայի պաշտօնաթերթ «Իզվեստիա»յի համաձայն, Ուկրայինայի եւ կեդրոնական Ռուսիոյ մէջ տիրող սովին հետեւանքով, անապաստան երախաները դարձեալ սկսած են խուժել Մոսկուա։

Վախնալով բծաւոր ժանտատենդի տարածուելէն, առողջապահական պաշտօնատունը հրահանգած է հաւաքել ամբողջ Ռուսիոյ դատարկապորտ մանուկները։ Ամէն կողմ հակակշռի կայաններ հաստատուեցան։ Մոսկուա մտնող բոլոր կառախումբերը քննութենէ կ՚անցուին եւ դատարկապորտները կը ձերբակալուին։ Սեպտեմբերին Մոսկուայէն դէպի հարաւային գաւառները քշուեցան անապաստան երախաները. սակայն միւս կողմէ ուրիշ կարաւաններ կուգան դէպի մայրաքաղաք, սովին եւ թշուառութեան հետեւանքով։ Ներկայիս անապաստան երախաներու թիւը կը հաշուուի 50,000 եւ ոճիրներու մեծ մասը կը վերագրուի անոնց։

## Մարսիլիոյ գործադուլը վերջացած

Մարսիլիոյ բանթողները Աշխատանքի Սակարանին մէջ ժողով գումարեցին։ Ընդհանուր-քարտուղարը զեկոյց տուաւ Փարիզի մէջ հանրօգուտ շինութեանց Նախարար Թարտիէօի հետ կատարուած բանակցութեանց մասին։ Յետոյ քուէարկուեցաւ օրակարգ մը, որով կ՚որոշուի գործի վերսկսիլ վաղը՝ երկուշաբթի առաւօտ։

Նախարարին առաջարկած պայմանները ընդունելի նկատուեցան։

## Անասօղուի թրքուհիները

Սվազի վաճառականներէն եւ մտաւորականներէն յիսուն հոգի, վերջերս ժողով գումարած են տեղւոյն Թիւրք Օճաղըին մէջ, եւ կիներուն չարշաֆները անհետացնելու մասին խորհրդակցած։

Ժողովականները որոշած են նախ իրենց կիներուն չարշաֆները հանել տալ եւ յետոյ միջոցներ ձեռք առնել որ բոլոր կիներն ալ անոնց հետեւին։

## Ալպանիա եւ Թուրքիա

Պոլիսէն կը հեռագրեն.— Լաւատեղեակ շրջանակներու մէջ կը խօսին թէ Իտալիա դիմում պիտի կատարէ Թուրք կառավարութեան մօտ, որպէսզի այս վերջինը ճանչնայ Ալպանիոյ միապետական վարչաձեւը եւ Զօկու թագաւորը։ Այս դիմումը, սակայն, պիտի ձախողի, քանի որ Թուրքիոյ մերժումը բացարձակ է։

